Ռընոտէլ և Պաք (Ֆրանսա)։ Արհեստակցական Միջազգայինը կը ներկայացնէին նախագահ՝ Ուտրկէսթ եւ փոխ-նախագահներ Լէոն Ժուհօ եւ Մէրթընս։

Եուկօսլաւիոյ ընկերվարական կուսակցութեան պատուիրակը պարզեց Պալքաններու, մասնաւորապէս Ալպանիոյ կացութիւնը։ Այս առթիւ թէ՛ առտու եւ թէ կէսօրէ վերջի նիստին մէջ երկար վիճաբանութիւններ կատարուեցան։ Քննուեցաւ նաեւ Չինաստանի կացութիւնը։ Յետոյ քուէարկուեցաւ բանաձեւ մը՝ պալքանեան ու չինական խնդիրներուն եւ ֆաշիզմի մասին։ Բանաձեւին մէջ կ'ըսուի թէ՝ նկատելով, որ 1921ին Անգլիոյ, Ֆրանսայի, Իտալիոյ եւ Ճափոնի միջեւ կնքուած դաշնագիրը եւ 1926ի Թիրանայի համաձայնագիրը կը սպառնան Պալքաններու եւ Եւրոպայի խաղաղութեան, երկու Միջազգայինները կը պահանջեն 1.— Ազգերու Դաշնակցութեան խորհուրդին անմիջական գումարումը, ինչպէս կը նախատեսէ ուխտին 11րդ յօդուածը «պատերազմի կամ պատերազմի վտանգի պարագային». 2.— Իտալիոյ կողմէ Եուկօսլավիոյ դէմ եղած գանգատները հրապարակութեան տալ. 3.— Վէճը Ա. Դ. եան փոխանցելով հրապարակային բնոյթ կը ստանայ եւ գաղտնի դիւանագիտութեան վտանգները կը հեռանան։ 4.— Ա. Դ.ը խնդիրը քննելով իր վճիռը պէտք է տայ հրապարակաւ։ 5.— Ալպանիոյ ինքնորոշման իրաւունքը պէտք է յարգուի, եւ այդ երկիրը Իտալիոյ կամ Սերպիոյ թեւարկութեան տակ պէտք չէ մտնէ։ 6.— Ա. Դ.ը պէտք է հսկէ որ ծանր միջադէպեր չպատահին։

Չինական խնդրին առթիւ կը պահանջուի՝

1.— Արտահողային առանձնաշնորհները ջնջել. 2.— Առանձնաշնորհներէն հրաժարիլ. 3.— Այս անարդար առանձնաշնորհները պաշտպանելու համար ղրկուած ուժերն ու մարտանաւերը ետ կանչել։

## Պոլսոյ հայ կաթողիկներուն վէճը

Պոլսոյ հայ կաթոլիկները երկու մասի բաժնուած են պատրիարքական ընտրութեան առթիւ, որ տեղի պիտի ունենայ մօտ օրէն։ Ընդդիմադիրները ութ ներկայացուցիչներ ընտրած էին Ընտրական Յանձնաժողովին։ Վարչական ժողովէն ընտրուած ութ անձեր ատոնց հետ միասին պիտի կազմէին Ընտրական Յանձնաժողովը։ Ընդդիմադիրները ամէն իրիկուն Պատրիարքարան երթալով ժողով կը գումարէին։ Նազլեան Գերապայծառ Մարտ 28ին փակել տուաւ Պատրիարքարանի բոլոր սենեակները եւ բանալիները վրան առաւ, բարապաններուն պատուիրելով ներս չառնել հոգեւոր վերին իշխանութենէն չվաւերացուած և պաշտօնական հանգամանք չունեցող անհատներ։ Ընդդիմադիր ութը ներկայացուցիչները Պատրիարքարանի դուռները փակ գտնելով, նախ կառավարութեան մօտ բողոքեցին, յետոյ նիստ գումարելով վճռական որոշումներ տուին։ Մարտ 30ին իրիկուան ժամը 7,30ին՝ ընդդիմադիրներէն՝ 16 հոգի, ինչպէս նաեւ ժողովուրդէն 150ի չափ անձեր հաւաքուեցան Սագըզ Աղաճի Պատրիարքարանին առջեւ, եւ պահանջեցին որ դուռները բացուին։ Ներսի ծառաները ընդառաջ չգացին այս պահանջին։ Ասոր վրայ ընդդիմադիրները բռնի ներս մտան, եւ այս ընթացքին իրենցմէ մէկը թեթեւակի վիրաւորուեցաւ նետուած քարէ մը։ Ընդդիմադիրները կ'ըսեն թէ, քարը նետուած է Պատրիարքարանի ծառաներուն կողմէ։ Այս դէպքին վրայ ոստիկանութիւնը միջամտեց եւ քանի մը ծառայ պահականոց տարաւ, քննութեան ձեռնարկելու համար։

Ընդդիմադիրները գրաւեցին շէնքը, եւ բոլոր բարապաններն ու ծառաները փոխելով, իրենց կողմէ նոր ծառաներ նշանակեցին։ Յետոյ ժողով գումարեցին, եւ իրենցմէ ութ հոգի անդամ կարգեցին Ընտրական Յանձնաժողովին, Պատրիարքարանի կողմէ նշանակուած ութ անձերուն տեղ։ Այսպէսով Ընտրական Յանձնաժողովը բաղկացած կ'ըլլայ 16 անդամներէ, բոլորն ալ Նախաձեռնարկ մարմնի թեկնածուներէն։

## Ժաք Տօրիօ դատի կանչուած

Համայնավար երեսփոխան Ժաք Տօրիօ, որ վերջերս միջազգային համայնավար պատուիրակութեան մը հետ Չինաստան գացած էր, ֆրանս. կառավարութեան կողմէ դատի պիտի կանչուի։ Նախարարական խորհուրդին մէջ արտաքին նախարար Պրիան յայտնեց թէ Ժաք Տօրիօ Չինաստանի եւ Հնդկաչինի մէջ հակաֆրանսական քարոզութիւններ կ'ընէ՝ նպատակ ունենալով խռովութիւններ յարուցանել Ֆրանսայի դէմ այդ երկիրներու, մասնաւորաբար Աննամի մէջ։ Դատական նախարար Լուի Պարթու երեսփ. ժողովէն պիտի պահանջէ Ժաք Տօրիօի վրայէն վերցնել իր խորհրդարանական անձեռնմխելիութիւնը՝ որպէս զի կարելի ըլլայ դատել։

Շանկայէն հեռագիր մը կ'ըսէ թէ Ժաք Տօրիօ Հանքէու հասած է։

## Հնդկաչինի վտանգի տակ ?

Ռանկունէն Ապրիլ 3 թուականով կը հեռագրեն թէ ազգայնական պետական հարուած մը տեղի ունեցած է Եուննան նահանգի մայրաքաղաք Եունանֆուի մէջ՝ Չինաստանի հարաւարեւմտեան կողմը։ Նահանգին կառավարիչը իբր գերի կը պահուի իր երեք զօրավարներուն ձեռքը։ Կը վախցուի թէ այս անիշխանութենէն օգտուելով աւազակութիւններ պիտի պատահին։ Եունանֆուի ազգայնական ուսանողները պոլշեւիկեան քարոզութիւններ կ'ընեն։

«Փառի-Միտի» մեծ կարեւորութիւն կուտայ այս լուրին, որովհետեւ Եուննան սահմանակից է Թոնքինի։

## Գուրպան պայրամը

Գուրպան պայրամին առթիւ կիրակի առաւօտ Փարիզի մզկիթին մէջ նամազի հանդիսաւոր արարողութիւն մը տեղի ունեցաւ։ Աղօթքէն վերջ փարիզաբնակ իսլամները ներկայացուցիչները ընդունելութիւն մը ունեցան, մզկիթին սրահին մէջ, նախագահութեամբ Եգիպտոսի դեսպան Ֆախրի փաշայի։ «Էնսթիթիւ Միւզիլման»ի կողմէ ներկայ էր ընդհանուր քարտուղար Պ. Ռէնօ։

∴ Պոլիսէն «Թայմզ»ի թղթակիցը կը հեռագրէ թէ «Գատիր կէճէսի»ի առթիւ հազարաւոր իսլամներ խռնուած էին մզկիթները։ Այա Սօֆիան նորոգութեան պատճառաւ փակուած էր, սակայն մզկիթին դուրսը 12,000 հոգի աղօթեցին։ Ֆաթիհի, Պայազիտի եւ Սիւլէյմանիյէի մզկիթները նոյնպէս խռնուած էին՝ իրիկուան ժամը 8էն մինչեւ կէս-գիշեր։



## ՍԱԿԱՐԱՆ

4 Ապրիլ 1927

ԴՐԱՄՆԵՐ

| | | |
|---|---|---|
| Սթերլին, | L. St. | [illegible] |
| Տոլար, | Dollar | [illegible] |
| Մարք (ոսկի) | 100 Mark | [illegible] |
| Թրքական Թղթ. | L. Trq. | [illegible] |
| Թրք. ոսկի | » or | [illegible] |
| Մէճիտիէ | Médjidié | [illegible] |
| Լէվա 100 հատը | Léva | [illegible] |
| Տրախմի » | Drachme | [illegible] |
| Լիր » | » Lire | [illegible] |
| Պելժ. ֆրանք » | Frc. Belge | [illegible] |
| Զուից. » | Frc. Suisse | [illegible] |
| Լէյ 100 հատը | Ley | [illegible] |
| Չերվոնեց | (10 Roubles or) | [illegible] |

ԱՐԺԵԹՈՒՂԹ

| | | |
|---|---|---|
| Եգ. Քր. Ֆօնսիէ I | Cr. Fonc. Eg. | [illegible] |
| » II | » | [illegible] |
| » III | » | [illegible] |
| Ռումէլի երկթղ. | Lots turcs | [illegible] |

Comptoir Parisien de change et de Cr[illegible]
80, Rue Lafay[illegible]

IMPRIMERIE - MASSIS - ÉDIT[illegible]
208bis, Rue Lafayette Paris(10)

Le Gérant : H. TEURNIE[illegible]

ժէն Շէն առանձին առանձին պատասխանեց հինգ պետութեանց ծանօթ ծանուցագրին՝ Նանքինի խժդժութեանց մասին։ Ֆրանսայի տրուած պատասխանը մեղմ է, մինչ Անգլիոյ եւ Ամերիկայի ուղղուածը շատ խիստ է։ Պատասխանին մէջ Էօժէն Շէն կը մերժէ պետութեանց պահանջները եւ կը պահանջէ որ միջազգային յանձնաժողով մը կազմուի՝ ճշտելու համար Նանքինի մէջ օտարականներու դէմ կատարուած խժդժութեանց պատասխանատուները։

Նանքինի մէջ Չանկ-Քայ-Շէքի նախագահութեամբ Քուոմինթակի համաժողովը տեղի ունեցաւ։ Հակապոլշեւիկ տարրերը մեծամասնութիւն կը կազմէին. չափաւոր ազգայնականները վերջնապէս խզեցին իրենց յարաբերութիւնները ծայրայեղներուն հետ։ Համաժողովը որոշեց ձերբակալել եւ բանտարկել Հանքէուի կառավարութեան զատական եւ երկրագործական նախարարները, համայնավարներու պետը եւ ուրիշ համայնավար վարիչներ, որոնց մէջ նաեւ Պորոտին։ Կ'ըսուի թէ երրորդ կառավարութիւն մը պիտի կազմուի Չինաստանի մէջ։ Չանկ-Ցօ-Լին դիկտատուրա պիտի հռչակէ Փէքինի մէջ։

## Ընկերվարականներու համագումարը

Այսօր Լիոնի Ռամօ սրահին մէջ կը բացուի Ֆրանսայի ընկերվարական կուսակցութեան տարեկան համագումարը, որ պիտի վերջանայ Ապրիլ 20ին։

Երէկ Լիոնի Էմիլ Զոլայի սրահներուն մէջ տեղի ունեցան Երիտասարդ Ընկերվարականներու, ինչպէս նաեւ ընկերվարական թաղապետութեանց ազգային դաշնակցութեան համաժողովները։

Ընկերվարական համագումարին օրակարգն է.

1.— Զեկոյցներ՝ քարտուղարի եւ գանձապահի. Ազգերու դաշնակցութիւն. վերստուգիչ յանձնաժողով. «փօփիւլէր» թերթի խնդիր. ընկերվարական Միջազգայինի պատուիրակութիւն. խորհրդարանի ընկերվարական խմբակ։

2.— ընկերվարութեան դիրքը ա) հանդէպ քաղքենի կուսակցութեանց. բ) հանդէպ պոլշեւիկներուն։

3.— կուսակցութեան գործելակերպի ծրագրին ճշդումը.

4.— կեդրոնական կազմակերպութեանց նորոգում։

Ինչպէս քանիցս գրեցինք, համաժողովին մէջ գլխաւոր երեք խնդիրներ կան։ 1.— Ընկերվարական կուսակցութեանց համար շահաւո՞ր է թէ անպատեհ, որ ընկերվարականներ ներկայացնեն իրենց «քաղքենի» կառավարութիւնները Ազգերու Դաշնակցութեան մօտ (Փօլ Պօնքուրի պարագան)։ 2.— Ընկերվարական երեսփոխանները իրաւունք ունէ՞ին քուէարկելու զինուորական նոր օրէնքը։ Ամէնէն կարեւորն է երրորդ խնդիրը՝ 3.— Ընկերվարութեան դիրքը հանդէպ քաղքենի և համայնավար կուսակցութեանց։ Այս մասին երկար ատենէ ի վեր վիճաբանութիւններ կը կատարուին եւ միայն Փարիզէն չորս բանաձեւ ներկայացուած է։

## Ռուսիոյ ապագայ վարչաձեւը

Ինչպէս յայտնի է, երկու նախկին մեծ դուքսեր՝ Նիքոլա Նիքոլայեւիչ եւ Կիրիլ իրարու հետ կը վիճին Ռոմանոֆներու գահին ժառանգութեան համար։ Մեծ-դուքս Կիրիլ անցած տարի ինքզինքը ցար հռչակեց եւ Քօպուրկի մէջ իր կայսերական շքախումբը ունի։ «Ցար» Կիրիլ Գերմանիոյ միապետականներու օրկան «Քրոյցէր Ցայթունկ»ի յայտարարած է հետեւեալը.—

«Ռուսիոյ ապագայ վարչաձեւը պիտի ըլլայ «Սովետական միապետութիւն»։ Խորհրդարանային դրութիւնը սնանկացած է բոլոր երկիրներու մէջ։ Քաղաքական այս դիակը չի կրնար ռուս ժողովրդին ապահովել ազատ եւ մարդկային կեանք մը, ոչ ալ համայնավարական կամ քաղքենի դիկտատուրան։ Խորհրդային վարչաձեւը կը յարմարի ռուս ժողովուրդին եւ պէտք չէ ջնջուի։ Պետութեան գլուխը համայնավար կուսակցութեան Բիւրօին պիտի յաջորդէ ցարը, որ պիտի դառնայ խորհրդային Սահմանադրութեան գերագոյն օրկանը»։

## ՄԱՆՐ ԼՈՒՐԵՐ

ԱՐԺԱՆԹԻՆԻ պատերազմ. նախարարը հինգ օդանաւերու ուղեկցութեամբ թռիչք մը կը կատարէր լեռնային շրջանի մը մէջ, երբ օդանաւէն վար ինկաւ։ Շնորհիւ անկարգելի մը, անվնաս գետին իջաւ եւ քալելով հասաւ մօտակայ գիւղ մը։

ՎԻՊԱԳԻՐ կասթոն Լըրու մեռաւ Նիսի մէջ։

# ԱԶԳԱՅԻՆ ՄԵԾ ՍԳԱՀԱՆԴԷՍ

## ԱՊՐԻԼ 11-24Ի ՏԱՐԵԴԱՐՁԻՆ ԱՌԹԻՒ

### ՓԱՐԻԶ

Նախաձեռնութեամբ փարիզի Հայ. Ուս. Միութեան, եւ մասնակցութեամբ Հ. Յ. Դաշնակցութեան, Ս. Դ. Հնչակեան եւ Ռամկ. Ազատական կուսակցութեանց, Զ. Ո. Միութեան, «Յարդգող»ի, բժշկական ու գրողներու եւ Արուեստասէրներու Միութեանց։

24 Ապրիլ կիրակի իրիկուն ժամը 8.30ին Salle de Géographieի մէջ, 184 Bld. Saint-Germain.

### ԱԼՖՕՐՎԻԼ

24 Ապրիլ Կիրակի կէսօրէն վերջ ժամը 2.30ին, Salle des Fêtes Rue Etienne Dolet, Alfortville) նախաձեռնութեամբ Զ. Ե. Ո. Միութեան և մասնակցութեամբ Հ. Յ. Դաշնակցութեան թաղական խորհուրդի, Հ. Մ. Ը. Մ.ի և Երիտասարդաց միութեան։

### ՄԱՐՍԻԼԻԱ

կիրակի 1 մայիս կէսօրէ առաջ ժամը 9ին րիւ թափի վէրի սինէմային մէջ։

### ՎԱԼԱՆՍ

տեղի կ'ունենայ, Ապրիլ 23ին շաբաթ երեկոյ ժամը 8.30ին Սինէմա Սէն Լուիի սրահին մէջ։

### ՎԻԷՆ

Ապրիլ 24 Կիրակի, կէսօրէ յետոյ ժամը 2ին Փոնթ Էվէքի Էթուալ սինէմայի սրահին մէջ։ Բանախօսութիւններ, երգեր, արտասանութիւններ։

ՄՈՒՏՔԸ ԱԶԱՏ Է

## ԵՐԵԿՈՅԹ ՌՈՒՍԱՀԱՅ ԿԱՆԱՆՑ ՄԻՈՒԹԵԱՆ

Ապրիլ 26ին, Երեքշաբթի օրը, Փարիզի Ռուսահայ Կանանց Միութիւնը կազմակերպած է անդամներու եւ հիւրերու համար երեկոյթ Women's Paris Clubի ընկերակցութեամբ, 4 Rue Chevreuse, երաժշտական մասով եւ պարերով Jazz-Bandի ընկերակցութեամբ։

Մուտքը 10 ֆրանք, իւրաքանչիւր անձի համար։ Պիւֆէն ձրի է։ Երեկոյթի սկիզբը ժամը 8.30ին։



## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԼԻՈՆԻ Տարօն-Տուրուբերանի Հայրենակցական Միութեան Ընդհ. ժողովը Երեքշաբթի 19 Ապրիլ, Հ. Յ. Դ. նախկին զրադարանին մէջ, ճիշտ ժամը 8ին. կը հրաւիրուին նաեւ Տէսինի բոլոր հայրենակիցները։ Օրակարգը խիստ կարեւոր է։



ՍԱԿԱՐԱՆ

16 Ապրիլ 1927

| ԴՐԱՄՆԵՐ | | Ֆր. | |
|---|---|---|---|
| Սթերլին, | L. St. | 124 | 02 |
| Տոլար, | Dollar | 25 | 54 |
| Մարք (ոսկի) | 100 Mark | 605 | — |
| Թրքական Թղթ. | L. Trq. | 12 | 80 |
| Թրք. ոսկի | » or | 113 | — |
| Մէճիտիէ | Médjidié | 8 | 50 |
| Լէվա 100 հատր | Léva | 18 | 50 |
| Տրախմի » | Drachme | 34 | — |
| Լիր » | » Lire | 125 | — |
| Պելճ. ֆրանք » | Frc. Belge | 70 | 80 |
| Զուից. » | Frc. Suisse | 490 | 75 |
| Լէյ 100 հատր | Ley | 15 | 60 |
| Չերվոնեց | (10 Roubles or) | 92 | — |
| ԱՐԺԵԹՈՒՂԹ | | | |
| Եգ. Քր. Ֆօնսիէ I | Cr. Fonc. Eg. | 3050 | — |
| » II | » | 1950 | — |
| » III | » | 1550 | — |
| Ռումելի երկթղ. | Lots turcs | 165 | — |

Comptoir Parisien de change et de Crédit
80. Rue Lafayette



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris(10e)

Le Gérant : H. TEURNIER

